*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

 № 10

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԱՎԻԱՑԻԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՄԱՐՏԵՐՈՒՄ

## ԱՎԻԱՑԻԱՅԻ ԳԵՆԵՐԱԼ-ԼԵՅՏԵՆԱՆՏ Ն. ԺՈՒՐԱՎԼՅՈՎ

Սովետական ժողովուրդը ստալինյան ավիացիայի օրը այս տարի նշում է Կարմիր Բանակի մեծ հաղթանակների իրադրության մեջ: Հիտլերյան Գերմանիան սովետա-գերմանական ռազմաճակատում կրած ծանր պարտությունների հետևանքով ռազմա-քաղաքական կրիզիս է ապրում, կանգնած է կատաստրոֆի եզրին:

Սովետական ավիացիան, Կարմիր Բանակի զորքերի հիմնական տեսակներից մեկը լինելով, կարևոր դեր է խաղացել հիտլերյան ռազմական մեքենային հարվածներ հասցնելու գործում: Պատերազմը լիովին հաստատեց այն դրույթի ճշտությունը թե՝ «Ով ուժեղ է օդում, նա ուժեղ է ընդհան-

րապես»: Դրա համար էլ օդում տիրապետություն նվաճելու համար մղվող պայքարը մեր ստրատեգիայի գլխավոր խնդիրներից մեկն էր կազմում:

Պայքարը շատ դժվարին էր ու բարդ: Սակայն մենք այդ պայքարից հաղթող դուրս եկանք, կարողանալով ոչ միայն դիմադրել գերմանացիների օդային արմադային, այլև անհամալրելի կորուստներ պատճառել նրան:

Պատերազմի երեք տարում հիտլերյան ավիացիան կորցրել է 60 հազար ինքնաթիռ, որոնցից ոչ պակաս քան 80 տոկոսը մեր օդաչուները ցած են գցել օդային մարտերում: Գերմանացիների կորցրած ինքնաթիռների ավելի քան 50 տոկոսը կազմում են ռմբակոծիչներ: Այդ նույն ժամանակամիջոցում թշնամին թռիչքային անձնակազմից կորցրել է մոտ 120 հազար մարդ: Այս կորուստները զգալի չափով թուլացրին գերմանական ավիացիայի ուժը: 1944 թվին գերմանացիները 4—5 անգամ ավելի քիչ թռիչք են գործում, քան նրանք կատարում էին 1941—42 թվերին:



Պատերազմի սկզբում մեր ռազմա-օդային ուժերը պաշտպանում էին Կարմիր Բանակի զորամասերի բացազատումը: Ավիացիայի ակտիվ աջակցությամբ տեղի էր ունենում արդյունաբերական ձեռնարկությունների էվակուացիան դեպի երկրի խորքը: Օդաչուները պահպանում էին արդյունաբերական կարևորագույն կենտրոնները և կոմունիկացիաները:

Սովետական ավիացիան դեռ պատերազմի առաջին ժամանակաշրջանում հաջողությամբ ռմբակոծում էր թշնամու խոր թիկունքում գտնվող ռազմական օբյեկտները: Բեռլինի, Քյոնիգսբերգի, Մեմելի, Պլոեշտիի և արդյունաբերական ու ստրատեգիական մյուս կարևոր կետերի վրա կատարված գրոհները լուրջ վնաս պատճառեցին ֆաշիստներին:

Սովետական ավիացիան Կարմիր Բանակին օգնեց վիժեցնելու «կայծակնային» պատերազմի հիտլերյան պլանը:

Օդում տիրապետություն նվաճելու համար մղվող պայքարում մեր ավիացիան աչքի ընկնող հաջողություններ ձեռք բերեց: Սովետական հրամանատարությունը վարպետորեն մանևրելով, ապահովում էր

ինքնաթիռների թվական գերակշռությունը վճռական ուղղություններում նույնիսկ այն ժամանակ, երբ հակառակորդը ավելի շատ ինքնաթիռներ ուներ, քան մենք: Առանձնահատուկ նշանակություն ուներ մեր թռիչքային անձնակազմի որակական գերազանցությունը գերմանականի նկատմամբ: Օդում տիրապետություն նվաճելու պայքարի ելքը որոշեցին ստալինյան օդաչուները: Բազմաթիվ օրինակներ վկայում են սովետական ասերի արիությունը և անվեհերությունը:

Մեր օդաչուները երկյուղ չունեն մարտում, նրանց բոլոր գործողությունները տոգորված են միայն մեկ ձգտումով՝ կատարել խնդիրը, ինչ էլ որ լինի՝ ոչնչացնել թշնամուն: Նրանք համարձակ գրոհում են հակառակորդի վրա նույնիսկ եթե նա թվով գերակշիռ է: Լեյտենանտ Գորոբեցը հետապնդելով թշնամու կործանիչին, կտրվում է իր խմբից: Վերադառնալիս իր օդանավակայանը, Գորոբեցը տեսնում է գերմանական «Յունկերս—87» տիպի քսան խոյընթաց ռմբակոծիչ, որոնք գնում էին ռմբակոծելու մեր զորքերին: Լեյտենանտը համարձակ գրոհի է գնում «յունկերսների»



վրա և դրանցից ինը ցած գցում, իսկ մյուսներին մատնում փախուստի:

Պատերազմի օրերին գերմանական օդաչուների դեմ մղվող մարտերում ձևավորվեց սովետական ասի՝ անվեհեր օդաչուի տիպը, որը գիտե օդային մարտի բոլոր նրբությունները, բարձր վարպետությամբ տիրապետում է ինքնաթիռավարման տեխնիկային: Մեր ասերից շատերը սարսափ են պատճառում գերմանական օդաչուներին: Սովետական հռչակավոր աս գնդապետ Պոկրիշկինը անձամբ ցած է գցել 59 ինքնաթիռ:

Մեր օդաչուների վարպետության, արիության և խիզախության պատճառով թշնամու ավիացիայի թռիչքային անձնակազմը վախենում է երևալու մեր տերիտորիայի վրա: Տեսնելով մեր բազեներին, ֆաշիստական գիշատիչները անմիջապես ետ են դառնում, հապճեպորեն փախչում իրենց կողմը:

Օդում տիրապետություն նվաճելու պայքարում նշանակալից դեր պատկանել և պատկանում է այնպիսի կարևոր գործոնների, ինչպիսին է ինքնաթիռների որակն ու քանակը: Սովետական կոնստրուկտորների,

ավիացիոն արդյունաբերության բանվորների, ինժեներների ու տեխնիկների ջանքերով ստեղծվեցին նաև բավականաչափ քանակությամբ առաջնակարգ մարտական մեքենաներ: Մեր «Յակովլև» և «Լավոչկին» կործանիչները թռչում են ավելի արագ և ավելի շուտ են վեր բարձրանում, քան գերմանական «Մեսսերշմիտ» և «Ֆոկե-վուլֆ» կործանիչները: Մեր «Պետլյակով» ռմբակոծիչը թռիչքի արագությամբ գերազանցում է գերմանական բոլոր ռմբակոծիչներին, իսկ «Իլյուշին» գրոհիչը բոլոր կողմերով իր հավասարը չունի աշխարհում:

Այդ բոլոր գործոնները միասին վերցրած սովետական ավիացիային հնարավորություն տվին արդեն 1943 թվին տիրապետություն նվաճելու օդում՝ վճռական ուղղություններում և հսկայական վնաս հասցնել հակառակորդի օդային ուժերին: Ուժերի փոխհարաբերությունը այս տարի էլ ավելի բարենպաստ դարձավ մեզ համար:

Օդում տիրապետություն ձեռք բերելու համար մղվող պայքարի հետ միասին սովետական ավիացիան պատերազմի ամբողջ ընթացքում անմիջականորեն մասնակցում է ցամաքի վրա տեղի ունեցող մարտական



գործողություններին: Հակառակորդի ցամաքային զորամասերին նրա հասցրած հարվածները եղել են խորտակիչ: Նրանք վճռական ազդեցություն էին գործում առանձին մարտերի և ամբողջ գործողությունների վրա:

1941 թվին մեր ավիացիան Սմոլենսկի ուղղությամբ ջախջախեց գերմանական 39-րդ տանկային կորպուսը: Դա Կարմիր Բանակին հնարավորություն տվեց նախապատրաստելու Սմոլենսկի պաշտպանությունը և երկար ժամանակով կասեցնելու թշնամու առաջխաղացումը դեպի Մոսկվա: 1942 թվի ամռան Ստալինգրադի ուղղությամբ մեր օդային հետախուզությունը ժամանակին բացահայտեց հակառակորդի գրահատանկային զորքերի խոշոր ուժերի շարժման ուղղության փոփոխումը: Թշնամին ձգտում էր Դոնի ոլորանով դեպի Ստալինգրադ: Անհրաժեշտ էր ինչ գնով էլ որ լիներ կասեցնել հակառակորդի շարժումը կամ թեկուզ այնքան թուլացնել նրա հարձակողական տեմպը, որ հնարավոր լիներ անհրաժեշտ ուժեր կենտրոնացնել Ստալինգրադի մոտ: Ժամանակ շահելու խնդիրը դրվեց ավիացիայի վրա և նա հաջողությամբ կատարեց այդ խնդիրը:

Ստալինգրադի համար մղված մարտերում գերմանացիներն զգացին այն ժամանակվա համար մեր նոր «Յակովլև—1» կործանիչների ուժն ու հզորությունը։ Այդ ինքնաթիռներով ստալինյան խիզախ բազեների գունդը, Սովետական Միության Հերոս ընկեր Կլեշևի հրամանատարությամբ, պաշտպանելով Դոն գետի ոլորանի անցարանը, մեկ օրվա ընթացքում ցած գցեց թշնամու 37 ինքնաթիռ, ըստ որում չկորցնելով և ոչ մի մեքենա։

Մեր ժողովրդի հիշողության մեջ ընդմիշտ կմնա կոմերիտական հերոս օդաչու Վիկտոր Ռողալսկու պայծառ հիշատակը, որը առասպելական կապիտան Գաստելլոյի նման թշնամու վրա տարավ իր խփված վիթխարի ինքնաթիռը։ Այդ օրը կոմերիտական Ռողալսկին երկու անգամ գնացել էր գրոհելու Ստալինգրադի ծայրամասում շարժվող գերմանական տանկերի վրա։ Երբ նա երրորդ անգամ գրոհելու գնաց, թշնամու զենիթային հրետանու արկը դիպավ ինքնաթիռի մոտորին։ Մեքենան բոցավառվեց։ Փրկության համար մնացել էր մեկ ելք՝ պարաշյուտը։ Սակայն հերոս կոմերիտականը որոշեց զոհվել, բայց անձնատուր չլինել։ Նա իր վառվող մեքենան



ուղղեց տանկերի բուն խմբի վրա, ծանր կորուստ պատճառեց թշնամուն, քայքայեց քաղաքի կենտրոնը խցկվող գրահապատ հրեշների մարտակարգը։

Ստալինգրադի համար մղված մարտերում ավիացիան մեր զորքերին օգնեց պաշտպանելու հերոս քաղաքը։ Երբ մեր զորքերն անցան վճռական հարձակման, ավիացիան հզոր մուրճի դեր խաղաց, որը փշրում էր գերմանական պաշտպանությունը։ Ստալինգրադի մոտ գերմանացիներին շրջապատելուց հետո ավիացիան օդից ամուր կողպեց փակեց ստալինգրադյան «կաթսան»։

Սովետական ավիացիան ցամաքային զորքերի հետ սերտ փոխգործողությամբ 1943 թվին «Կուրսկի աղեղում» վճռական հաջողություններ ձեռք բերեց Կարմիր Բանակի հուլիսյան պաշտպանողական մարտերում։

Մեր ինքնաթիռները ջախջախում էին ո՛չ միայն օդում եղած թշնամու մեքենաները, այլև մեծ ավերածություններ էին գործում թշնամու բանակում ցամաքի վրա, ոչնչացնելով գերմանական «վագրերը» և «ֆերդինանդները»։

Այդ մարտերի ժամանակ գերմանական տանկերին հասցված ավիացիոն հարվածների էֆեկտիվության մասին կարելի է դա-

տեղ այսպիսի փաստով: Գերմանական 9-րդ տանկային դիվիզիան ելակետային դիրք էր գրավել Պոնիրի շրջանում հարձակում գործելու համար, սակայն գրոհի անցնելուց 20 րոպե առաջ այդ դիվիզիան օդից գրոհի ենթարկվեց սովետական գրոհիչ ավիացիայի խոշոր ուժերի կողմից: Հրկիզվեց գերմանական մոտ 70 տանկ, իսկ մնացածները կործանումից փրկվելով, սողացին զանազան կողմեր: Թշնամու տանկային խոշոր գրոհը ձախողվեց:

Երբ Կարմիր Բանակը վճռական հարձակման անցավ և գերմանացիներին քշեց արևմուտք, մեր ավիացիան իր հզոր հարվածներով սովետական զորքերի համար հաղթանակի ճանապարհ էր հարթում: Նա ճնշում էր թշնամու հրետանին ու ականանետները, ջախջախում նրա տանկերը, կենդանի ուժը, բարոյալքում հակառակորդի պահեստային զորքերը:

Ղրիմում մեր տարած հաղթանակը ձեռք բերվեց մեր ավիացիայի ակտիվ մասնակցությամբ: Օդաչուները հետևակի ու տանկերի համար հաղթանակի ճանապարհ էին հարթում Կարելական պարանոցում: Նրանք վճռական դեր խաղացին Վիտեբսկի մոտ մղված մարտերում:



Կարմիր Բանակի ավիացիայի հզորությունն ու հաջողությունները նախապատրաստված էին մեր սովետական պետության զարգացման ամբողջ ընթացքով: Այդ հաջողությունների մեջ իրենց արտահայտությունը գտան ժողովրդի անձնվեր աշխատանքը, նրա ստեղծագործական ընդունակությունները, բոլշևիկների պարտիայի կազմակերպիչ դերը, մեր մեծ առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի իմաստությունը:

Ամփոփելով առաջին հնգամյակի արդյունքները, ընկեր Ստալինը ասել է. «Մենք ավիացիոն արդյունաբերություն չունեինք: Մենք այժմ ունենք այդ»: Հետագա տարիներին այդ արդյունաբերությունը աճեց ու ամրապնդվեց: Նրա կադրերը փորձ էին կուտակում և ընդլայնում իրենց գիտելիքները: Սովետական գիտնականների ստեղծագործ միտքը գործնականորեն անդրադարձավ Յակովլևի, Լավոչկինի, Իլյուշինի, Պետլյակովի, Պոլիկարպովի, Միկոյանի, Կլիմովի, Շվեցովի և մյուսների հիանալի կոնստրուկցիաների մեջ: 1941 թվին ավիացիոն արդյունաբերության աշխատողները աչքի ընկնող սխրագործություն կատարեցին: Նրանք արագ-

և օրինակելիորեն իրենց գործարանները էվակուացրին երկրի խորքը և այնտեղ ռեկորդային կարճ ժամկետում գործարկեցին դրանք: Պատերազմի ընթացքում մեր ավիաարդյունաբերությունը ո՛չ միայն պահպանվեց, այլև այնքան աճեց, որ կարողացավ լիովին բավարարել ռազմաճակատի պահանջը և տալ գերազանց որակի մարտական ինքնաթիռներ:

Սովետական ժողովուրդը առանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերում իր օդային ուժերի նկատմամբ: Դրա վառ արտահայտությունը միջոցների հավաքումն է ինքնաթիռներ կառուցելու համար: Ֆերապոնտ Գոլովատիի նախաձեռնությամբ աշխատավորները իրենց անձնական խնայողություններից հսկայական գումարներ մուծեցին և այդ միջոցներով կառուցված հազարավոր ինքնաթիռներ այժմ գործում են Հայրենական պատերազմի ճակատներում:

Մեր ավիացիայի մարդկանց մարտական ծառայությունները բարձր են գնահատված սովետական կառավարության կողմից: Հայրենական պատերազմի ժամանակ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են գրեթե 60 հազար մարդ: Սովետական Միության Հերոսի կոչմանն արժանացել են



ավելի քան 700 մարդ: Օդային տասներեք լավագույն մարտիկներ Պոկրիշկինին, Դմիտրի Գլինկային, Պոկրիշևին, Բոնդարենկոյին, Ռեչկալովին, Ալելյուխինին, Լուգանսկուն, Կամոզինին, Եֆրեմովին, Լավրինենկովին, Զայցևին, Գուլաևին և Գոլուբևին այդ կոչումը շնորհված է երկու անգամ:

Օդում նախաձեռնությունը ամուր կերպով պահպանելով իրենց ձեռքում, սովետական օդաչուները ապահովում են ցամաքային զորքերին թշնամու ավիացիայի գրոհներից, լրացնում են հրետանու կրակը, նպաստում տանկերի մանևրին, ճանապարհ հարթում հետևակի համար: Մեր ստալինյան բազեները հաջողությամբ գործում են թշնամու թիկունքում, կտրում նրա պահեստային զորքերին, ոչնչացնում տեխնիկան, ավերում կոմունիկացիաները, խոր հետախուզություն կատարում լայն ճակատով: Սովետական ավիացիան դարձել է ամենահզոր:

Պատասխանատու խնդիրները հաջողությամբ լուծում է նաև մեր երկրի քաղաքացիական ավիացիան: Նա կարևոր բեռները հասցնում է ռազմաճակատ, էվակուացնում է վիրավորներին. օդաչուները թռիչք-

ներ են գործում դեպի թշնամու թիկունքը, պարտիզանների մոտ, սպառազինություն, ռազմամթերք, վառելանյութ, պարենամթերք հասցնելով նրանց: Տրանսպորտային-մարդատար ավիացիան կատարում է շատ ուղարկվող բեռների մեծ փոխադրումներ: Ազատագրված շրջանների հետ կապը կարգավորելու առաջին դերը նրան է պատկանում: Քաղաքացիական նավատորմի օդաչուները ապահովում են կապը Ծայրագույն Հյուսիսի շրջանների հետ, պահպանում են անտառները, մասնակցում գյուղատնտեսական բույսերի վնասատուների դեմ մղվող պայքարին:

Պատերազմը մոտենում է իր վախճանին, սակայն այն դեռևս չի վերջացել: Թշնամին դեռևս կատաղի դիմադրություն է ցույց տալիս: Վերջնական հաղթանակի հասնելու համար պետք է եռապատկել, տասնապատկել մեր եռանդը թե՛ ռազմաճակատում և թե՛ թիկունքում:

Ավիացիոն արդյունաբերության բանվորների, ինժեներների ու կոնստրուկտորների



խնդիրն է՝ ռազմաճակատին տալ բարձր որակի է՛լ ավելի շատ մարտական ինքնաթիռներ, դրանց համար սպառազինություն և ռազմամթերք: Մենք բոլորս պետք է ուժեղացնենք մեր օգնությունը օդային նավատորմին և դրանով էլ արագացնենք մեր հաղթանակի օրը ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների:

---

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԹԵՎԱՎՈՐ ԶԱՎԱԿՆԵՐԸ

Հայրենական պատերազմի ճակատներում մարտնչող ռազմիկների շարքում իրենց արժանավոր տեղն են գրավել հայ ժողովրդի թևավոր զավակները՝ խիզախ օդաչուները: Առաջավոր գծում, հակառակորդի խոր թիկունքում ու արդյունաբերական խոշոր քաղաքների վրա համարձակորեն սավառնում են սովետական օդաչուները, կրակի լավա թափում գերմանա-ֆաշիստական զավթիչների գլխին, ոչնչացնում նրա կենդանի ուժն ու տեխնիկան:

Ռուս մեծ ժողովրդի և Սովետական Միության մյուս ժողովուրդների զավակների հետ միասին հարյուրավոր հայ օդաչուներ իրենց քաջագործությունների համար արժանացել են Սովետական Միության բարձր պարգևի, նրանց կրծքերը զարդարված են շքանշաններով ու մեդալներով: Բոլորը պարծանքով են խոսում Սովետական Միության Հերոս օդաչուներ՝ Գվարդիայի մայոր Նելսոն Ստեփանյանի, Գվարդիայի կապիտան Սամսոն Ակրտումյանի, ավագ լեյտենանտ



Սերգեյ Բուռնազյանի, շքանշանակիր օդաչուներ Գառնիկ Գազազյանի, Հակոբ Մանուկյանի, Սուրեն Թաշչյանի, Լևոն Դավթյանի, Մամիկոն Հովհաննիսյանի, Լյուդվիկ Ղասաբյանի մարտական սխրագործությունների մասին: Նրանցից յուրաքանչյուրը մի պայծառ էջ է գրել Հայրենական պատերազմի տարեգրության մեջ:

Ահա քաղվածքներ նրանց սխրագործությունների հերոսական էպոպեայից:—

...Ավագ լեյտենանտ Սերգեյ Բուռնազյանի մարտական կյանքի ուղին սկսվել է 1936 թվից, երբ նա առաջին անգամ ընդունվեց Երևանի աերոակումբին կից օդաչուական դպրոցը: Հայրենասեր կոմերիտականը պատանի հասակից օր ու գիշեր ուսումնասիրում էր սովետական ինքնաթիռի մասերը, տիրապետում թռիչքի ձևերին: 1937 թվին հաջողությամբ ավարտելով դպրոցը, նա ինքնուրույն թռչելու իրավունք ստացավ: 1938 թվին Սերգեյ Բուռնազյանը որպես գերազանց թռչողի գործուղվում է Խերսոնի օդաչուական դպրոցը: Այստեղ նա շատ ու շատ բան սովորեց: Հայրենական պատերազմի առաջին իսկ օրից Բուռնազյանը մեկնում է ռազմաճակատ: Այդ ժամանակ նա իր կյանքի 25

տարին նոր էր բոլորել: Կարճ ժամանակամիջոցում ձեռք բերեց ռազմաճակատի փորձված և խիզախ օդաչուի համբավ, մըշակեց օդային կռվի իր ինքնուրույն մեթոդներն ու ձևերը, մարտական գործողությունների կանոնները: Օդաչու Բունդայանը կարողանում էր խորապես թափանցել մարտի էության մեջ, նկատել «անտեսանելին», կայծակի արագությամբ կողմնորոշվել ստեղծված բարդ իրադրության մեջ և գտնել հաղթանակի ճիշտ ուղին:

Այս բոլորն առաջին անգամ նա դրսևորեց Ստալինգրադի հերոսական պաշտպանության օրերին, մեծ դյուցազնամարտի կրակի ու բոցերի մեջ:

Մի քանի մարտական էպիզոդներ անվեհեր օդաչուի կյանքից:—

...Ինքնաթիռները հսկայական արագությամբ թռչում էին իրար դեմ: «Մեսսերի» ուրվագիծն աճում էր Բունդայանի ինքնաթիռի նշանոցում: Եղան վայրկյաններ, որ «Մեսսերը» հետ գնաց: Բունդայանի գընդացիրների հետք թողնող գնդակների կրակի լեզուները հպվեցին թշնամու ինքնաթիռի ուրվագծին: «Մեսսերշմիդտը» ծխի սև շերտ թողնելով գահավիժեց ցած: Բայց նրա անկման մեջ ինչ որ անբնական բան



կար— ահա նա ուղղվեց և սկսեց հեռանալ: Սովետական կործանիչների մի եռյակ սկսեց հալածել նրան և սեղմել դեպի գետինը: «Մեսսերշմիդտի» օդաչուն փորձեց ճողոպրել, բայց ամեն տեղ նրա հետևից հասնում էր կրակե կարկուտը և այն ժամանակ նա հասկացավ, որ պետք է վայրէջք կատարել: «Մեսսերը» ընկավ գետին՝ մեր օդանավակայանի մոտ: Դեպի անկման վայրն էին վազում օդաչուներն ու տեխնիկները: Նրանցից առաջ անցնելով մոտոռների հզոր հռնդյունով և խուպող թռիչքով անցան երեք կործանիչ և կարծես տոնելով իրենց հաղթանակը, նըրանք անցան «Մեսսերշմիդտի» վրայով ու սլացան դեպի կապույտ երկնակամարը:

Գերմանական օդաչուն գերի վերցվեց:

Այդ 1942 թվի աշնանն էր՝ Ստալինգրադի մոտ:

...Տաք աշնանային օր էր: Օդանավակայանում տեղի էր ունենում մարտական աշխատանք: Տափակացուկ կործանիչները շարունակ բարձրացնելով փոշու ամպեր, մոտոռների հզոր հռնդյունով թռչում էին կապույտ երկնքի լազուրում: Հրետանային

ուժեղ ռմբակոծությունը երբեմն խլացնում էր օդանավակայանի աղմուկը:

Անամպ երկնքում օդային կատաղի մարտեր էին բռնկվում: Թշնամին նետվում էր դեպի կարևոր ամրոցը...

Սովետական կործանիչների մի էսկադրիլիա, լեյտենանտ Բուռնազյանի ղեկավարությամբ, դուրս էր եկել քաղաքը պաշտպանելու: Ինքնաթիռները օրորվելով, հստակ մարտակարգով թռչում էին քաղաքի վրա: Ականջակալները լի էին մեղմ սուլոցներով և երբեմն լսում էին խմբի ղեկավարի ձայնը: Հանկարծ քաղաքի վրա երևացին հակառակորդի «Յունկերս—87» ինքնաթիռները: Գետնի վրա գտնվող ռադիոկայանը մեր օդաչուներին նախազգուշացրեց գերմանական ինքնաթիռների երևալու մասին:

Ղեկավարը գրոհի ազդանշան տվեց: Կործանիչները շուռ գալով, սկսեցին վայրասլաց թռիչք և հարձակվեցին «Յունկերսների» վրա: Հակառակորդը նկատելով՝ փորձեց շրջան կազմել, բայց արդեն ուշ էր. մեր օդաչուներն ամենուրեք հասնում էին նրանց և հարվածում: Օդային մարտն ավելի բորբոքվեց: Երեք «Յունկերս» ընկան ներքև: Մի քանի րոպեից հետո ևս երկու



«Յունկերս» աշնանային երկնքում ծխի հետքեր թողնելով գլորվեցին գետին: Մնացածները ռումբերն անկանոն նետելով սկսեցին մեկ առ մեկ մարտից դուրս գալ: Քաղաքի ռազմական օբեկտների ռմբակոծությունը տապալվեց: Օդաչու Բուռնազյանը հավաքեց իր խումբը և տարավ օդանավակայան: Այդ ժամանակ ռադիոյով հաղորդվեց հետևյալը. «Կործանիչների խմբի ղեկավար լեյտենանտ Բուռնազյանին ներկայացնել կառավարական պարգևատրման»:

Ստալինի քաղաքի պաշտպանության համար մղված օդային կատաղի մարտերում այսպես փառք ձեռք բերեց Հայաստանի հպարտ բազե լեյտենանտ Բուռնազյանը և իր կարմրաստղ կործանիչի թևերով այդ փառքը հասցրեց մինչև Ուկրաինա: Շարքային օդաչուից նա աճեց և դարձավ էսկադրիլիայի հրամանատար: Պարգևատրվեց կառավարական չորս շքանշանով: Անսահման համարձակությունը, խիզախությունը, անձնական հերոսությունը, անսպառ եռանդը, կործանիչին տիրապետելու իր բացառիկ վարպետությունն առանձնապես մարմնավորվել էին Բուռնազյանի մեջ:

Լիխայա կայարանի պաշտպանության օրերին որպես «Յակ—1» վեցյակի ղեկավար,

ուժեղ ռմբակոծությունը երբեմն խլացնում էր օդանավակայանի աղմուկը:

Անամպ երկնքում օդային կատաղի մարտեր էին բռնկվում: Թշնամին նետվում էր դեպի կարևոր ամրոցը...

Սովետական կործանիչների մի էսկադրիլիա, լեյտենանտ Բուռնազյանի ղեկավարությամբ, դուրս էր եկել քաղաքը պաշտպանելու: Ինքնաթիռները օրորվելով, հստակ մարտակարգով թռչում էին քաղաքի վրա: Ականջակալները լի էին մեղմ սուլոցներով և երբեմն լսում էին խմբի ղեկավարի ձայնը: Հանկարծ քաղաքի վրա երևացին հակառակորդի «Յունկերս—87» ինքնաթիռները: Գետնի վրա գտնվող ռադիոկայանը մեր օդաչուներին նախազգուշացրեց գերմանական ինքնաթիռների երևալու մասին:

Ղեկավարը գրոհի ազդանշան տվեց: Կործանիչները չուռ գալով, սկսեցին վայրասլաց թռիչք և հարձակվեցին «Յունկերսների» վրա: Հակառակորդը նկատելով՝ փորձեց շրջան կազմել, բայց արդեն ուշ էր. մեր օդաչուներն ամենուրեք հասնում էին նրանց և հարվածում: Օդային մարտն ավելի բորբոքվեց: Երեք «Յունկերս» ընկան ներքև: Մի քանի րոպեից հետո ևս երկու



«Յունկերս» աշնանային երկնքում ծխի հետքեր թողնելով գլորվեցին գետին: Մնացածները ռումբերն անկանոն նետելով սկսեցին մեկ առ մեկ մարտից դուրս գալ: Քաղաքի ռազմական օբյեկտների ռմբակոծությունը տապալվեց: Օդաչու Բուռնազյանը հավաքեց իր խումբը և տարավ օդանավակայան: Այդ ժամանակ ռադիոյով հաղորդվեց հետևյալը. «Կործանիչների խմբի ղեկավար լեյտենանտ Բուռնազյանին ներկայացնել կառավարական պարգևատրման»:

Տալլինի քաղաքի պաշտպանության համար մղված օդային կատաղի մարտերում այսպես փառք ձեռք բերեց Հայաստանի հպարտ զավակ լեյտենանտ Բուռնազյանը և իր կարմրաստղ կործանիչի թևերով այդ փառքը հասցրեց մինչև Ուկրաինա: Շարքային օդաչուից նա աճեց և դարձավ էսկադրիլիայի հրամանատար: Պարգևատրվեց կառավարական չորս շքանշանով: Անսահման համարձակությունը, խիզախությունը, անձնական հերոսությունը, անսպառ եռանդը, կործանիչին տիրապետելու իր բացառիկ վարպետությունն առանձնապես մարմնավորվել էին Բուռնազյանի մեջ:

Լիխայա կայարանի պաշտպանության օրերին որպես «Յակ—1» վեցյակի ղեկավար,

Բունիաթյանը հանդիպեց հակառակորդի մի խումբ ինքնաթիռների։ 10 «Մեսսերշմիտ» և 6 կործանիչներ փորձում էին ռմբակոծել կայարանը։ Բունիաթյանը հրամայեց՝ հանո՛ւն Հայրենիքի, հանո՛ւն Ստալինի— գրոհի։ Սովետական օդաչուները հարձակվեցին գերմանական գիշատիչների վրա և այդ մարտում ցած գցեցին հակառակորդի 9 ինքնաթիռ։

Օդային մի ուրիշ մարտում, երբ Կուբանի կազակ, Սովետական Միության Հերոս կապիտան Զուբկովի ինքնաթիռի վրա հարձակվեցին գերմանական երկու կործանիչ․ Բունիաթյանը թռավ և օգնության հասավ ընկերոջը։ Նա խփեց թշնամու կործանիչներից մեկին։ Այս մարտում առանձնապես արտահայտվեց հայ ռազմիկի ընկերական օգնությունը, որը վտանգի ենթարկելով իր կյանքը, փրկեց հարազատ ընկերոջը։

Թե ինչպիսի խոր սիրով էր կապված Բունիաթյանը իր էսկադրիլիայի մարտիկների հետ, այդ մասին վկայում է նրա մտերմությունը իր մշտական ուղեկից, սերժանտ Լադիգինի հետ։



...Ձմեռային մի ցուրտ օր էր։ Հրամանատարական կետի մոտ հավաքվել էին մի խումբ օդաչուներ։ Ստալինգրադի ամպամած երկինքը թռիչքային եղանակ չէր գուշակում։ Օդաչուներն աշխույժ վիճաբանում էին, թե ինչպիսի դիրքեր ընտրեն գերմանական ռմբակոծիչների վրա գրոհելու համար։ Նրանցից միայն մեկը վիճաբանությանը չէր մասնակցում և մի կողմ էր քաշվել։ Դա միջահասակ մի մարդ էր, ռնկլանը հաղած, հարթավզու թուխ դեմքով։ խոշոր, սև և մեղմ աչքերը նայում էին երկինքին, նրա դեմքին պարզ փայլում էր օդի կարոտը, իր արագաթռիչ ընկերոջ՝ ինքնաթիռի կարոտը։ Նրա ամբողջ կերպարը խոսում էր այն մասին, որ մարդը ծընված է օդի համար, որ նա կարող է լինել միայն կործանիչ օդաչու, երկնքի տերն ու անօրենը։ Ահա նա շուռ եկավ և մոտեցավ կանգնածներին։ Օդաչուները տեղ տվին և ընդունեցին իրենց շրջանում։ Նրանցից մեկը դիմեց մոտեցողին։ «Ընկե՛ր լեյտենանտ, պատմեցեք, թե ինչպես պետք է ավելի լավ խփել «Յունկերս—88» ինքնաթիռին»։ Մոտեցողը աշխուժացավ և պատասխանեց.

— Հարկավոր է մոտենալ «Յունկերսի» ետևից, վերևից, աջից կամ ձախից և կըրակ բանալ որքան կարելի է մոտ տարածությունից, սկզբում հրաձիգի վրա և ապա կրակը փոխադրել մոտորի վրա: Ահա այսպես... խոսողը կիսաճանապարհին կանգ առավ: Ամպերից դուրս ցատկեց գերմանական մի ինքնաթիռ, դա հենց «Յունկերս—88» էր:

— Մոտորը գործի դնել,— բացականչեց օդաչու Մինասյան և մի զույգ «Յակեր» կտրվելով օդանավակայանից, հետապնդեցին «Յունկերսին»: Վերջինս սկսեց ճողոպրել, բայց «Յակերը» հասան նրա ետևից: Երևում էր, թե ինչպես կործանիչը ընդհուպ մոտեցավ «Յունկերսին» և հրանոթից ու գնդացրերից մի երկար կրակահերթ տվեց: «Յունկերսի» մոտորը իսկույն բոցավառվեց: Օդում թափվեցին երկու պարաշյուտների սպիտակ գմբեթներ: Ռմբակոծիչը թեքվելով թևի վրա, ընկավ գետին:

Մի քանի րոպե անց «Յակերը» իջան օդանավակայան և անցան իրենց կանգառատեղերը: 45 համարի «Յակի» կաբինից դուրս եկավ մի օդաչու. Նա մոտեցավ օ-



դաչուներին՝ դեպի աչքերը քաշելով ականջավոր սաղավարտը և ասաց.

— Ահա՛ ձեզ իմ պրակտիկան:—Բոլորը աղմուկով նետվեցին շնորհավորելու իրենց ուսուցչի հաղթանակը:

Դա Բունիաթյանն էր, որը ներկա եղողների առաջ ցույց տվեց սովետական կործանիչ օդաչուի վարպետությունը:

Խիզախ օդաչու Սերգեյ Բունիաթյանն իրեն անմահ փառքով պսակեց Ուկրաինայի համար մղված մարտերում: Կործանիչ ավիացիայի էսկադրիլիայի հրամանատար, օդային մարտերի վարպետ Բունիաթյանը իր անսահման համարձակությունն ու անվեհերությունը զուգակցում էր թշնամուն հաղթելու բարձր հմտության հետ:

Նա մեկ տարվա ընթացքում 250-ից ավելի մարտական թռիչք է կատարել, օդային մարտերում խփել ֆաշիստական 29 ինքնաթիռ:

Հայ ժողովրդի հարազատ զավակ Բունիաթյանը զոհվեց 1943 թվի ապրիլի 14-ին՝ մարտական պատասխանատու առաջադրանք կատարելու ժամանակ: Թշնամու ավիառումբի բեկորը կտրեց նրա թանկագին կյանքի թելը: Երբ N ավիացիոն գունդն են գնում երիտասարդ օդաչուները, գնդի

հրամանատարը նրանց հավաքում, մոտեցնում է մի նկարի և ասում.

«Թռեք և թշնամուն խփեք հերոս օդաչու Բունիաթյանի պես... եղեք նրա պես խիզախ և քաջ...»:

Օդաչուները սրբությամբ են պահում իրենց զորամասի հերոս օդաչուի հիշատակը: Նրանք Բունիաթյանի վրեժը լուծելու համար 6 ամսում խփել են գերմանական 160 գիշատիչ: Այդ հաշիվը օրը օրին աճում է:

Որպես կենդանի հուշարձան Երևան է փոխադրվել Սովետական Միության Հերոս, ավագ լեյտենանտ Սերգեյ Բունիաթյանի № 45 մարտական կործանիչը, որի ֆյուզելաժի վրա նկարված են 29 աստղեր: Դրանք ցույց են տալիս հերոս օդաչուի կողմից անձամբ խփած գերմանական ինքնաթիռների քանակը:

Հայ ժողովուրդը իր սրտի ծալքերում հավերժ անթառամ կպահի Սերգեյ Բունիաթյանի հիշատակը:

Սովետական Միության Հերոս Սամսոն Մկրտումյանը իր փառքը ստեղծեց Կովկասի պաշտպանության օրերին:

Գերմանացիները ճեղքելով հարավային ռազմաճակատը, ընդհուպ մոտեցել էին



Վլադիկավկազին: Ֆրիցները մագլցում էին Կովկասյան լեռնաշղթայի լեռնանցքները: Տանկերը փորձում էին ճեղքել անցնել դեպի ռազմավիրական ճանապարհը:

— Գլուխ չի գա,— ասաց կապիտան Մկրտումյանը,— գերմանացիները Կովկասում չեն լինի:

Եվ ահա Մկրտումյանն իր էսկադրիլիայի օդաչուների հետ միասին օր ու գիշեր կրակի կարկուտ էր մաղում գերմանացիների գլխին:

Հակառակորդը շրջապատեց երկաթուղային N կարևորագույն հանգույցը: Մի գորշ մառախլապատ առավոտ էր: Թշնամին հարձակման չէր սպասում: Բայց Սամսոն Մկրտումյանի համար ամեն մի եղանակ էլ թռիչքի եղանակ է: Նա նպատակակետի վերևը այնքան անսպասելիորեն հայտնվեց, որ ֆրիցները ապշեցին: Մրրիկի, կայծակի պես երկնքից ռումբերը ընկնում էին ճիշտ նպատակակետին: Հօդս ցնդեց շտաբային ավտոբուսը, այրվեցին մի քանի տանկեր և թնդանոթներ:

Օդաչու Սամսոն Մկրտումյանը իր ռմբակոծություններով հարյուրավոր գերմանական մեքենաներ վեր է ածել երկաթի լոմի:

Մարտերից մեկում հինգ «Մեսսերշմիտ»

դուրս եկան Մկրտումյանի դեմ։ Դաժան մարտ տեղի ունեցավ։ Մկրտումյանը հմտորեն մանևրում էր և գնդացրից տեղատարափ կրակ բաց անում։ «Մեսսերշմիտներից» մեկը ցած գլորվեց գնդացրային դիպուկ համազարկով։ Մնացածները փախան ամպերի մառախուղի մեջ։ Խիզախ օդաչուն հետապնդեց թշնամական անգղերին և դաժան մարտում հաղթանակով դուրս եկավ։

Մկրտումյանը լեռնականին հատուկ վրեժով է լցված դեպի գերմանական զավթիչները։ Դրա համար էլ նրա էսկադրիլիայի օդաչուները իրենց 150 մարտական թռիչքի ժամանակ ոչ մի կորուստ չեն ունեցել։ «Տանկեր կործանիչներ»— այս անունն են տվել զենքի մարտական ընկերները լեռնային արծիվ, Զանգեզուրի հպարտ զավակ Սամսոն Մկրտումյանին։

Երբ հատուցման ժամը հասավ և ամբողջ Կովկասը հարվածեց գերմանացիներին, նրանք սկսեցին ետ փախչել դեպի արևմուտք։ Սովետական օդաչուները գերմանացիների գլխին էին թափում հենց իրենց ձեռքով Կովկաս բերած ռումբերը։ Գերմանացիները երբեք չտեսան Կովկասը, նրա նավթն ու ուրիշ հարստությունները։



Ստրուկներ լինելու համար չեն ծնված Կովկասի ժողովուրդները՝ վրացիները, հայերը, ադրբեջանցիները, օսերը...

— Լեռնային արծիվ, այսպես են անվանում Սամսոն Մկրտումյանին։ Նա ծնվել է Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղում, դաստիարակվել Բաքվում․ Նրան դաստիարակել է լենինյան-ստալինյան կոմերիտմիությունը, բոլշևիկների մեծ պարտիան։ Մկրտումյանը 1924 թվից կոմերիտմիության մեջ է, իսկ 1931 թվից պարտիայի անդամ։ Բաքվի նավթահանքերի նախկին հորատող Մկրտումյանը Հայրենական պատերազմի ճակատներում դարձել է աներկյուղ օդաչու, որը թռչում է տառացիորեն ինքնաթիռների բոլոր տեսակներով։

Մրրկահավ,— այսպես են անվանում էսկադրիլիայի հրամանատար, Գվարդիայի մայոր Նելսոն Ստեփանյանին։ Նա Կարմրադրոշ Բալթիկայի և Սև ծովի կապույտ երկնակամարով ճախրող այն խիզախ բազեն է, որը գերմանական զավթիչների դեմ մղվող կռիվներում արժանացել է Սովետական Միության Հերոսի կոչմանը։ Բացի այդ, պարգևատրվել է Կարմիր Դրոշի երկու և Լենինի շքանշաններով։

Բալթիկը և Լենինի մեծ քաղաքը Նևա-

նը սիրում է նույն ջերմությամբ, ինչպես ջերմությամբ՝ հարազատ Երևանը: Նրա մարտական սխրագործությունների համառոտ պատմությունը տվել է պոետ Նաիրի Զարյանը իր «Ցասման զանգակը» վերնագրով գրքում: Նելսոնը «Իլ» և «Յակ» կործանիչներով կրակ ու մահ է թափում գերմանացիների գլխին:

«Կարմրադրոշ բալթիական նավատորմի օդաչուները,— գրում է «Պրավդան»,— շարունակում են հարվածներ հասցնել հակառակորդի նավերին և կայաններին: Մի խումբ ինքնաթիռներ կապիտան ընկ. Ստեփանյանի առաջնորդությամբ հայտաբերեցին հակառակորդի երեք փոխադրանավ: Չնայած ամպամածությանն ու վատ տեսանելիությանը, օդաչուները գրոհի ենթարկեցին թշնամուն: Երեք հազար տոննա ջրածավալ ունեցող փոխադրանավի վրա տեղի ունեցավ ուժեղ պայթում և այն ընկղմվեց:

Գվարդիական ռմբակոծիչները նոր հարված հասցրին հակառակորդի նավահանգստին: Ճեղքելով արգելափակիչ ուժեղ կրակը, նրանք ռումբերը նետեցին ուղիղ նպատակակետերի վրա: Ծագեց մինչև 20 հրդեհ, որի բոցը երևում էր հեռու տարածությունից»:

Նելսոնը այնպիսի հրաշքներ է գործել,



որ մեր դարավոր առասպելներն անգամ իրենց երևակայական կերպարներով նսեմանում են նրանց առաջ:

Սովետական Միության Հերոս Նելսոն Ստեփանյանի երկու և կես տարվա անձնական հաշվում նշված է գերմանական 600 ավտոմեքենայի, 100 տանկի, զենիթային 300 թնդանոթի ու ավտոմատի, 6 նավի, հարյուրավոր ինքնաթիռների ոչնչացման մասին:

Մարտական առաջադրանքների կատարման ընթացքում որպես կոմունիստ, նա անձնական օրինակ է տալիս: Մայոր Ն. Ստեփանյանը անասելի սխրագործություններ է կատարել այս տարի ռուսական փառքի օրրան՝ Սևաստոպոլ քաղաքի և Ղրիմի համար մղված մարտերում: Իր էսկադրիլիայով ոչնչացրել է հազարավոր հիտլերականների: Ղրիմի լիակատար ազատագրումից հետո նա կրկին վերադարձել է հարազատ Բալթիկա:

Սովետական Միության Հերոս Նելսոն Ստեփանյանը ներկայումս մեծ ժողովրդականություն է վայելում: Ի նշան այդ ամենի՝ տասնյակ բանաստեղծություններ, երգեր, նկարներ և քանդակներ են նվիրվել հաղթող բազեին:

Մարտերում կռվել և առանձնացել է հայ ժողովրդի խիզախ զավակ Լյուդվիկ Ղազարյանը: Հայրենիքը նրա կուրծքը զարդարել է Կարմիր Դրոշի երկու, «Կարմիր Աստղի» և Հայրենական պատերազմի երկրորդ աստիճանի շքանշաններով:

Ղազարյանն իր ընկերներով շատ անգամ է թռել և ջախջախել գերմանական զավթիչներին: Նա վայրասլաց և խոյացող թռիչքների լավագույն վարպետ է: Նշանակալից է նրա 90-րդ մարտական թռիչքը: Անսպասելիորեն հարձակվելով անտառում թաքնված գերմանացիների վրա, Ղազարյանն ու իր քաջարի ընկերները հրկիզեցին հակառակորդի տասնյակ մեքենաներ, պայթեցրին կուտակված արկերը:

Ղազարյանը շատ անգամ է օգնության հասել և փրկել իր մարտական ընկերներին:

Մարտական առաջադրանքը կատարելուց հետո օդանավակայան էին վերադառնում սովետական «Իլերը», երբ հանկարծ ամպերի միջից դուրս եկավ թշնամու «Ֆոկե-վուլֆ—190» տիպի ինքնաթիռների մի խումբ: Տեղի ունեցավ օդային կատաղի մարտ: Հակառակորդի ինքնաթիռներից մեկը գրոհեց օդաչու Բորխենկոյի վրա: Բորխենկոյի դրությունը ծանրացավ:



Ղազարյանը կայծակի արագությամբ սլացավ դեպի թշնամական անդղը և դնդացրային մի քանի դիպուկ համազարկով այրեց ֆաշիստական մեքենան: Օդային մարտն ավարտվեց մեր օդաչուների հաղթանակով: Թշնամին կորցնելով երկու ինքնաթիռ, փախավ և անհետացավ ամպերի մեջ:

Մի ուրիշ անգամ Ղազարյանը փրկել է ավիազորամասի հրամանատարի կյանքը:

Կուբանի համար մղված ճակատամարտերում քաջի համբավ նվաճեց կոմերիտական կործանիչ օդաչու Հակոբ Մանուկյանը: Օդային կատաղի մարտերից մեկում նա ճակատ առ ճակատ գրոհի մտնելով գերմանական 4 «Մեսսերների» հետ, իր դիպուկ համազարկով պատռեց մի օդաչուի կաբինը: «Մեսսերշմիդտը» թևի վրա շուռ եկավ և սրընթաց ընկավ գետին: Դա երիտասարդ օդաչու Մանուկյանի առաջին հաղթանակն էր օդում:

Երկրորդ մարտը տեղի ունեցավ հաջորդ օրը: Մեր կործանիչները հանդիպեցին հակառակորդի գերակշիռ ուժերին: Չտատանվեցին սովետական օդային ռազմիկները: Համարձակորեն մարտի մտան՝ քանակական

գերակշռությունը հակադրելով իրենց հըմ-
տությունն ու խիզախությունը:

Այդ մարտում նորից աչքի ընկավ լեյտե-
նանտ Մանուկյանը: Երբ նրա հրամանատա-
րի ինքնաթիռին մոտեցավ գերմանական
կործանիչը, Մանուկյանը արհամարհելով
սեփական կյանքին սպառնացող վտանգը,
նետվեց թշնամու վրա, իր մեքենայի պոչա-
մասը դնելով երկրորդ գերմանացու հար-
վածի տակ: Մանուկյանը ժամանակին գոր-
ծեց: Նա կրակեց ֆաշիստական ինքնաթիռի
վրա, բայց թնդանոթից խփեց նաև մյուս
ֆաշիստը: Արկը պայթեց կաբինի մոտ,
պատռեց ֆյուզելաժը: Բեկորները սուր ցավ
պատճառելով մտան Մանուկյանի մարմի-
նը: Մեքենան մի կողմ ցատկեց: Մի վայր-
կյան ևս և նա թավալգլոր կընկներ: Մա-
նուկյանը հաղթահարելով ցավը, ուժ գոր-
ծադրելով՝ մեքենայորեն նետվեց ցած:
Գերմանացին հետապնդեց նրան: Կսկծում
էին վերքերը, սակայն դեռ բաբախում էր
հայ ժողովրդի խիզախ զավակի ազնիվ սիր-
տը, չարությունն ու ցասումը թշնամու դեմ
եռ էին գալիս նրա կրծքի տակ և նա, մո-
ռանալով վերքերը՝ նորից նետվեց մարտի
հորձանքի մեջ:

Հնդում էր մոտորը, ճարճատում էր



գնդացիրը: Մանուկյանը որպես վրիժառու
նետվում էր թշնամիներից մերթ մեկի,
մերթ մյուսի վրա և օգնության հասնում
յուրայիններին: Տապալվեցին գերմանացի-
ները: Նրանց մի մասը մարտից դուրս ե-
կավ: Մյուսները շարունակում էին կռվել:

Նորից գրոհ, երկրորդը, երրորդը, չոր-
րորդը...գերմանական ինքնաթիռներից մե-
կը հարձակվում է Մանուկյանի վրա, վե-
րևում ինքնաթիռները մոտենում են իրար:
Եվս մի վայրկյան, և նրանք ջարդ ու փը-
շուր կլինեն իրար բախվելուց: Մանուկյա-
նը վեր է սլանում և նորից վերևից արծվի
պես խոյանալով առաջին իսկ համազարկով
ցած է գցում ֆաշիստական մեքենան:

Նվազում են Մանուկյանի ուժերը, հո-
սում է արյունը, «մի քիչ էլ դիմանամ,
չկորցնեմ գիտակցությունս»,— մրմնջում է
չորացած շուրթերով Մանուկյանը: Իսկ
մարտը երկարաձգվում էր ու ավելի դաժան
բնույթ ստանում: Ի վերջո գերմանացիները
չդիմացան և մարտից դուրս եկան, իսկ մեր
օդաչուները վերադարձան իրենց բազանե-
րը:

Օդանավակայանում ընկերների օգնու-
թյամբ Մանուկյանը դուրս եկավ կաբինից:
Սանիտարուհին մայրական քնքշությամբ

կալեց նրա վերքերը և փոխադրեց գոսպիտալ: Հաջորդ օրը ամբողջ երկրով մեկ Սովետական Ինֆորմբյուրոն հաղորդեց Հակոբ Բալաբեկի Մանուկյանի հերոսական սխրագործության մասին, որը մարտում ցած էր գցել թշնամու երկու ինքնաթիռ: Արևային Հայաստանի զավակը շատ շուտ առողջացավ և կրկին վերադարձավ իր մարտական ընկերների մոտ: Ներկայումս Մանուկյանը դարձել է կապիտան և Հայրենիքը նրան պարգևատրել է մարտական չորս շքանշանով:

Գվարդիական օդաչու Սուրեն Թաշչյանի անձնական հաշվում անցյալ տարի մարտ ամսի վերջերին կար գրանցված 275 մարտական թռիչք, 268 հարձակում, 26 գրոհ և 22 մարտ, ցած էր գցել թշնամու 7 ինքնաթիռ:

Հայրենիքի պաշտպանության համար գերմանա-ֆաշիստական օկուպանտների դեմ մղվող պայքարում ցուցաբերած արիության ու հերոսության, հրամանատարության մարտական առաջադրանքները գերազանց կատարելու համար Թաշչյանի կուրծքը զարդարված է երեք շքանշանով:

Մարտական շքանշանները որպես հաղթության վկա փառաբանում են օդաչու



Լևոն Դավթյանին: 1942 թվի ծանր մարտերի օրերին նրան վստահվեց կովկասյան ռազմաճակատում՝ ինքնաթիռով ռազմամթերք հասցնել առաջավոր գիծը, իսկ այնտեղից վիրավորներ փոխադրել թիկունքը: Նա կատարելով 430 թռիչք, ազատել է 170 ծանր վիրավոր ռազմիկի կյանք:

1943 թվին Դավթյանը ավելի քան 300 մարտական թռիչք է կատարել, որոնք անցել են հաջող:

— Գիշերային թռիչքի վարպետ,— այսպես են անվանում օդաչու Ա. Հովհաննիսյանին: Նա հարյուրավոր հիտլերականներ է ոչնչացրել:

Գիշերային թռիչքի ժամանակ Հովհաննիսյանը ծանր դրության մեջ ընկավ: Հակառակորդի երեք ինքնաթիռ հանկարծակի դուրս եկան նրա դեմ: Խիզախ օդաչուն հմուտ կերպով մանևրելով տեսավ, որ հակառակորդի ուժերը գերակշռություն են կազմում, աննկատելի դառնալու համար ցածրացավ: Հիտլերյան գիշատիչներից մեկը, սակայն, նկատեց նրան և գնդացրային մի քանի կրակահերթ բաց թողեց: Հովհաննիսյանի ինքնաթիռի մոտորը դադարեց գործելուց: Նա առանց շփոթվելու վայրէջք կատարեց փոքրիկ բացատի մեջ:

Ասատրյան Հովհաննիսյանը և իր ընկերները հետաքրքիր արկածներից հետո միացան հարազատ զորամասին: Էսկադրիլիայի հրամանատարը տեսնելով նրանց, ուրախ բացականչեց.

— Բա ես ձեզ չէի՞ ասում, ընկերներ, որ մեր գիշերային բազեն ո՛չ երկնքում և ո՛չ էլ երկրում չի կորչի:

Գվարդիայի կապիտան Վարդգես Վարդանյանը, որը պարգևատրվել է Կարմիր Դրոշի երկու շքանշանով, ռուսական փառքի մեծ օրրան Սևաստոպոլի հերոսական պաշտպաններից է: Նա անձամբ ոչնչացրել է ավելի քան 26 տանկ, 23 կատեր ու բարժա, 80 ավտոմեքենա, 12·000 գերմանական զինվոր ու սպա:

Բազմաթիվ են հայ օդաչուների մարտական սխրագործությունները: Նրանք անմահ էջեր են գրել հարազատ Մոսկվայի, հերոս քաղաքներ Լենինգրադի, Սևաստոպոլի, Օդեսայի, Ստալինգրադի ու Կովկասի պաշտպանության տարեգրության մեջ:

Հայ ժողովրդի թևավոր զավակները Հայրենական պատերազմի հերոսների օրինակով ջախջախել են և շարունակում են ջախջախել գերմանական զավթիչներին:



Մեր քաջարի Կարմիր Բանակը ավիացիայի փոխգործողությունների օգնությամբ կոտրելով թշնամու համառ դիմադրությունը, անկանգ առաջ է շարժվում դեպի արևմուտք: Հեռու չէ սովետական հողը գերմանական զավթիչներից լիակատար ազատագրելու օրը:

Սովետական Միության ժողովուրդների մեծ ընտանիքում, նրանց զավակների հետ ուս-ուսի, հայ բազեները է՛լ ավելի խորտակիչ հարված կհասցնեն գերմանա-ֆաշիստական ավազակներին: Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի ղեկավարությամբ նրանք պատվով կկատարեն իրենց որդիական պարտքը հարազատ Հայրենիքի հանդեպ:

Խ. ԲԱՐՄԵՂՅԱՆ

---

